ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 18 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1953

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78


---

# ՍՍՌՄ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ


Ա. ԱՅՐՈՒՄՅԱՆ

ՀԿՊ Կենտկոմի գյուղբաժնի վարիչի տեղակալ


*Օրերս Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Պլենումը ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման առթիվ որոշում ընդունեց «ՍՍՌՄ Գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին»։*

*Այդ որոշման մեջ մշակվել են Սովետական Միության գյուղատնտեսության բոլոր ճյուղերի հետագա զարգացման արմատական հարցերը, նշվել են գյուղատնտեսական մթերքների արտադրությունը մեծ չափերով ավելացնելու ուղիները, պարենամթերքների նկատմամբ բնակչության, իսկ հումքի նկատմամբ թեթև և սննդի արդյունաբերության հարաճուն պահանջմունքների առավելագույն բավարարման համար։*

*ՍՍՌՄ սոցիալիստական գյուղատնտեսությունը, որ ստեղծվել և ամրապնդվել է Կո-*

մասնիստական պարտիայի ղեկավարությամբ ամենախոշոր ու մեքենայացված գյուղատնտեսությունն է աշխարհում։

Պարտիայի և Սովետական պետության անդուլ հոգատարության և օգնության շնորհիվ Սովետական Միության գյուղատնտեսությունը հագեցված է նորագույն առաջնակարգ տեխնիկայով։ Անշեղորեն զարգանում է կոլտնտեսությունների հանրային տնտեսությունը և ամրապնդվում կոլտնտեսային կարգը։ Դրա շնորհիվ մեր երկրում ընդլայնվել է հացահատիկի արտադրությունը, մեր երկիրը լիովին ապահովված է հացով։ Զգալիորեն ավելացել են բամբակի, շաքարի ճակնդեղի, մսի, կաթի, բրդի և մյուս մթերքների պետական մթերումները։

Կոլտնտեսային արտադրության անշեղ զարգացումը ապահովեց կոլտնտեսությունների հանրային հարստության անընդհատ աճը։ Տարեցտարի ավելանում են կոլտնտեսականների բնամթերային և դրամական եկամուտները։

Սակայն, ինչպես նշեց ՍՄԿՊ Կենտկոմի Պլենումը, գյուղատնտեսական մթերքների արտադրության մակարդակը լիակատար չափով չի բավարարում մնդամթերքների նկատմամբ բնակչության, իսկ



հումքի նկատմամբ թեթև և սննդի արդյունաբերության հարաճուն պահանջները և չի համապատասխանում գյուղատնտեսության տեխնիկական հագեցվածությանն ու կոլտնտեսային կարգի ունեցած հնարավորություններին։

Դրա հետ միասին, ՍՄԿՊ Կենտկոմի Պլենումը նշեց, որ խոշոր սոցիալիստական գյուղատնտեսության հսկայական հնարավորությունները դեռևս վատ են օգտագործվում։ Շատ կոլտնտեսություններում և շրջաններում գյուղատնտեսական կուլտուրաների բերքը դեռ ցածր է։ Առանձնապես անբարեհաջող է անասնաբուծության զարգացման գործը։ Գյուղատնտեսության զարգացման գործում խոշոր թերություն է հանդիսանում կարտոֆիլի և բանջարեղենի արտադրության լուրջ ետ մնալը։

Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Պլենումը ամենայն մանրամասնությամբ բացահայտեց և ցույց տվեց գյուղատնտեսության և նրա առանձին ճյուղերի ետ մնալու պատճառները և կոնկրետ միջոցառումներ նշեց մոտակա երկու—երեք տարում գյուղատնտեսության բոլոր ճյուղերի շեշտակի վերելք ստեղծելու համար։

ՍՄԿՊ Կենտկոմի Պլենումը պարտավո-

րեցրեց պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգաններին՝ միջոցներ ձեռք առնել անասնաբուծության զարգացման գործում անթույլատրելի ետ մնալը վերացնելու, կերի կայուն բազա ստեղծելու, անասունները և թռչունները շենքերով ապահովելու, անասնաբուծության մթերատվությունը վճռականորեն բարձրացնելու, անասունների գլխաքանակը ավելի բարձր տեմպերով ավելացնելու, նրա ցեղայնությունը բարելավելու և առաջիկա երկու—երեք տարում անասնաբուծական մթերքների արտադրությունը խիստ ավելացնելու համար։

Հանրային անասնաբուծությունն ամեն կերպ զարգացնելու հետ մեկտեղ՝ տեղական պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգանները պետք է խստիվ վերացնեն անձնական սեփականություն հանդիսացող անասունների նկատմամբ կոլտնտեսականների շահերի ոտնահարման վնասակար պրակտիկան, նկատի ունենալով, որ կոլտնտեսականի տնտեսության անձնական սեփականությունը հանդիսացող որոշ քանակությամբ մթերատու անասունների առկայությունը հանդիսանում է գյուղացիության նյութական բարեկեցության բարձրացման և երկրում անասնաբուծության մթերքների



մթերումների ծավալի ավելացման կարևոր պայման և, հետևաբար, շահավետ է ինչպես կոլտնտեսականների, այնպես էլ պետության համար։ Որպեսզի կոլտնտեսականները անասուններ ձեռք բերեն՝ պարտիան և կառավարությունը մի ամբողջ շարք միջոցառումներ են նշել կոլտնտեսականի տնտեսության համար Գյուղատնտեսական արտելի կանոնադրությամբ նախատեսված նորմաների սահմաններում մթերատու անասուններ պահելու նրանց տնտեսական շահագրգռությունը բարձրացնելու ուղղությամբ։

Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Պլենումի որոշման մեջ հսկայական նշանակություն է տրվում կոլտնտեսություններում և սովխոզներում կարտոֆիլի և բանջարեղենի արտադրությունն ու մթերումները ավելացնելու գործին։ ՍՄԿՊ Կենտկոմի Պլենումը կարտոֆիլի ու բանջարեղենի արտադրության ասպարեզում գլխավոր խնդիրը համարեց «...բերքատվության զգալի բարձրացումը՝ կարտոֆիլի և բանջարեղենի մշակման մեքենայացման լայն արմատավորման և առաջավոր ագրոեղանակների կիրառման հիման վրա»։

Պարտիական օրգանները, կոլտնտեսությունների, ՄՏ կայանների և սովխոզների

սկզբնական պարտիական կազմակերպությունները պետք է վճռականորեն բարելավեն բանջարեղենի և կարտոֆիլի արտադրության զարգացման գործի ղեկավարումը։

ՍՄԿԿ Կենտկոմի Պլենումը ցույց տվեց հացահատիկային, տեխնիկական և ձիթատու կուլտուրաների համախառն ու ապրանքային արտադրանքի հետագա ավելացման ուղիները։ Հաշվի առնելով այն, որ հացահատիկային տնտեսությունը ամբողջ գյուղատնտեսական արտադրության հիմքն է կազմում, անհրաժեշտ է ամեն կերպ զարգացնել հացահատիկային կուլտուրաների և հատկապես արժեքավոր պարենային կուլտուրա հանդիսացող աշնանացան ու գարնանացան ցորենի արտադրությունը՝ բերքատվության հետագա բարձրացման միջոցով։ Ինչպես բերքատվության բարձրացման, այնպես էլ ցանքատարածությունների ընդարձակման միջոցով պետք է զգալիորեն ավելացնել բամբակի և մյուս տեխնիկական ու ձիթատու կուլտուրաների արտադրությունը։ Դրա հետ միասին պետք է միջոցներ ձեռք առնել 1954—1955 թվականներին խաղողի և պտղատու այգիների տարածությունը խիստ



ավելացնելու և 1954 թվականին պտուղների ու խաղողի բարձր բերք ստանալու համար։

Կոլտնտեսային արտադրության զարգացման, գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների իրականացման գործում վճռական ուժ և սոցիալիստական պետության կողմից կոլտնտեսությունների ղեկավարման ասպարեզում կարևորագույն հենակետ են հանդիսանում մեքենա-տրակտորային կայանները, որոնք իրենցից ներկայացնում են կոլտնտեսային կարգի նյութատեխնիկական բազան։

Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Պլենումը սահմանեց, որ մեքենա-տրակտորային կայանների գլխավոր խնդիրն է՝ ամեն կերպ բարձրացնել գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվությունը կոլտնտեսություններում, ապահովել անասունների հանրային գլխաքանակի աճը՝ նրանց մթերատվության միաժամանակյա բարձրացման հետ միասին, ավելացնել հողագործության և անասնաբուծության համախառն ու ապրանքային արտադրանքը սպասարկվող կոլտնտեսություններում։ Մեքենա-տրակտորային կայանները պետք է ավարտեն աշխատանքների մեքենայացումը դաշտավարության մեջ, լայնորեն ծավալեն անասնաբու-

ծության, կարտոֆիլի և բանջարեղենի արտադրության աշխատատար պրոցեսների մեքենայացումը, կոլտնտեսային արտադրության մեջ արմատավորեն գիտության և առաջավոր փորձի նվաճումները, ապահովեն կոլտնտեսությունների կազմակերպական-տնտեսական հետագա ամրապնդումը և այդ հիման վրա բարձրացնեն կոլտնտեսականների նյութական բարեկեցությունը։

Պարտիայի առաջադրանքների անթերի կատարման գործում բացառիկ մեծ դեր են խաղալու այն միջոցառումները, որ ընդունել է ՍՄԿՊ Կենտկոմի Պլենումը գյուղատնտեսության ղեկավարումը և գյուղում տարվող պարտիական-քաղաքական աշխատանքը բարելավելու համար։

ՍՄԿՊ Կենտկոմի Պլենումը անհրաժեշտ համարեց բարձրացնել գյուղում տարվող քաղաքական ու կազմակերպական աշխատանքի մակարդակը, մոբիլիզացնել կոմունիստների, կոմերիտականների, բոլոր կոլտնտեսականների և ՄՏԿ-ների ու սովխոզների աշխատողների ստեղծագործական ակտիվությունը, շարժման մեջ դնել սոցիալիստական գյուղատնտեսության բոլոր ուժերն ու միջոցները, բարձրացնել մեր կադրերի պատասխանատվությունը՝ յուրաքանչյուր կոլ-



տնտեսությունում, մեքենա-տրակտորային կայանում և սովխոզում, յուրաքանչյուր շըրջանում գործերի դրության համար։

Մեր երկրի աշխատավորները ի պատասխան Կոմունիստական պարտիայի նոր հոգատարության, է՛լ ավելի մեծ եռանդով սոցիալիստական մրցություն են ծավալում արտադրական առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար, նրանք լի են պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Պլենումի որոշման մեջ առաջադրված խնդիրները կենսագործելու պատրաստակամությամբ։

Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ գլխավորել կոլտնտեսականների, ՄՏ կայանների և սովխոզների աշխատողների աշխատանքային ու քաղաքական ակտիվությունը և ամենօրյա օգնություն ցույց տալ նրանց՝ իրենց ստանձնած պարտավորությունները հաջողությամբ կատարելու գործում։

Ագիտատորները աշխատավորներին պետք է լայնորեն պարզաբանեն ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման ուղղությամբ ՍՄԿՊ Կենտկոմի Պլենումի որոշման կարևոր նշանակությունը և մոբիլիզացնեն նրանց՝ այդ որոշումը անշեղորեն կենսագործելու համար։

---

# ՍՏԵՓԱՆ ՇԱՀՈՒՄՅԱՆ

Մ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ
Պատմական գիտությունների թեկնածու

Սովետական ժողովուրդը նշում է իր պանծալի զավակ, Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության ականավոր գործիչ, Վ. Ի. Լենինի ու Ի. Վ. Ստալինի մերձավորագույն զինակից Ստեփան Շահումյանի ծննդյան 75-ամյակը։

Ստեփան Գևորգի Շահումյանը ծնվել է 1878 թվականի հոկտեմբերի 1(13)-ին Թբիլիսիում։ 1889—1898 թ. թ. նա սովորում է տեղի ռեալական ուսումնարանում, ղեկավարում աշակերտական անլեգալ խմբակներ և հրատարակում «Միածան» խմորատիպ ժուռնալը, ուր պարզորոշ կերպով դրսևորվում է Շահումյանի ատելությունը դեպի գոյություն ունեցող անարդարացի կարգերը։

1898—1900 թ. թ. Շահումյանն անմիջական շփման մեջ է մտնում Թբիլիսիում Ի. Վ. Ստալինի ղեկավարությամբ գործող մարք-



սիստական խմբակների հետ, ծանոթանում է ռուսական աքսորյալ սոցիալ-դեմոկրատներին և եռանդուն կերպով կարդում անլեգալ գրականություն։ Նա ուսումնասիրում է Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի և Վ. Ի. Լենինի մի շարք աշխատությունները, որոնցից հատկապես պետք է նշել «Կոմունիստական պարտիայի մանիֆեստ»-ը, «Կապիտալ»-ը, «Ի՞նչ են «ժողովրդի բարեկամները» և ինչպես են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ» և այլն։ Շահումյանի հոգևոր հայրերն ու ուսուցիչները դարձան Մարքսը, Էնգելսը, Լենինը։

Այդ բոլորը վճռական նշանակություն ունեցան Շահումյանի մարքսիստական աշխարհայացքի ձևավորման վրա։ Իսկ երբ նա փոխադրվում է Ռիգա, ռուսական հորդառատ ռևոլյուցիոն միջավայրը քաղաքականապես է՛լ ավելի է կոփում Շահումյանին և մեկընդմիշտ որոշում նրա տեղը հասարակական կյանքում։

Գոտեպնդված մարքսիզմի հաստատուն գիտելիքներով և ռևոլյուցիոն շարժման փորձով, Ստեփան Շահումյանը 1900 թվականին մտնում է ՌՍԴԲՊ-ի շարքերը։

Ռիգայում Շահումյանը ակտիվորեն ծավալում է ռևոլյուցիոն աշխատանք և դառ

նում ռևոլյուցիոն ուսանողության ճանաչված ղեկավարներից մեկը։

Շահումյանը 1901 թվականի դեկտեմբերին՝ Ռիգայում գումարված հայ ուսանողության համագումարում, ապա 1902 թվականի փետրվարին Պետերբուրգում հրավիրված ռևոլյուցիոն ուսանողության Համառուսական 1-ին համագումարում հանդես է գալիս կրակոտ ելույթներով, որտեղ կոչ է անում ուսանող երիտասարդությանը՝ քաղաքական պայքար մղելու տիրող կարգերի դեմ։

Ռևոլյուցիոն գործունեության համար 1902 թվականի մարտի 1-ին Շահումյանը հեռացվում է Ռիգայի Պոլիտեխնիկ ինստիտուտից և արտաքսվում Կովկաս։

Թբիլիսիում Շահումյանը կապվում է տեղի սոցիալ-դեմոկրատական կազմակերպության հետ և եռանդուն աշխատանք ծավալում բանվորների մեջ։ Նա միաժամանակ աչալրջորեն հետևում է հայ իրականությանը և մարքսիզմի գաղափարները պրոպագանդում հայ բանվորների, գյուղացիների ու առաջավոր ինտելիգենցիայի լայն շրջանում։ 1902 թվականի իր հրապարակախոսական խոշոր ելույթներից մեկում Շահումյանը մերկացնում է հայ ազգայնական ինտելի-



գենցիային և ցարիզմի դեմ մարտակոչ նետում։

Անդրկովկասի ժողովուրդների ինտերնացիոնալ միասնության կոփման, երկրամասում ռևոլյուցիոն աշխատանքի և պարտիական-քաղաքական գործունեության ծավալման համար կարևորագույն նշանակություն ուներ մարքսիստական մամուլի ստեղծումը։ Այդ տեսակետից բացառիկ կարևոր դեր կատարեց լենինյան «Իսկրա»-ն, որի օրինակով ու նրա ազդեցությամբ Անդրկովկասում հրատարակվեցին նաև տեղական անլեգալ մարքսիստական թերթեր։ Դրանք էին «Բրձոլա»-ն վրացերեն լեզվով, որ հրատարակվում էր Ի. Վ. Ստալինի և Վ. Զ. Կեցխովելու ղեկավարությամբ, և «Պրոլետարիատ»-ը հայերեն լեզվով, որը հրատարակվում էր Ստ. Շահումյանի և Բ. Կնունյանցի ղեկավարությամբ։ Այդ թերթերը հանդիսանում էին «Իսկրա»-ի մարտական ու հավատարիմ զինակիցները, որոնք առաջին անգամ մայրենի լեզվով պրոպագանդում էին գիտական սոցիալիզմի սկզբունքները և պայքարում նոր տիպի, մարքսիստական պարտիայի կառուցման լենինյան պլանի կենսագործման համար։

Վլադիմիր Իլյիչ Լենինն անձամբ ծանո-

թացավ «Պրոլետարիատ»-ի հետ և հատուկ հոդվածով ջերմորեն ողջունեց Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական պարտիայի նոր անդամին— «Հայ սոցիալ-դեմոկրատների միությանը» ու նրա օրգանին։ «Մենք ամբողջ հոգով ողջունում ենք «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» Մանիֆեստը և մանավանդ ազգային հարցի ճիշտ դրվածքը տալու նրա ուշադրավ փորձը։ Խիստ ցանկալի կլիներ, որ այդ փորձը հասցվեր մինչև վերջը»։

Այսպիսով, հայ մարքսիստական մամուլի ծնունդն անմիջականորեն կապված է Լենինի հավատարիմ աշակերտ Ստեփան Շահումյանի անվան հետ։ Հետագայում այդ մամուլի զարգացման խնդրում խոշոր դեր է կատարում նաև Սուրեն Սպանդարյանը։

***

1902 թվականի աշնանը Շահումյանն ընդունվում է Բեռլինի համալսարանի փիլիսոփայության ֆակուլտետը։ 1903 թվականի գարնանը նրա կյանքում տեղի ունեցավ մեծագույն իրադարձություն։ Նա ժնևում առաջին անգամ հանդիպում է համաշխարհային պրոլետարիատի առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինին և անմիջական կապեր հաստատում նրա հետ։



Երբ ՌՍԴԲՊ 2-րդ համագումարում (1903 թ.) առաջացան բոլշևիկների և մենշևիկների ֆրակցիաները, Շահումյանն անհապաղ ու անվերապահորեն կանգնեց բոլշևիկների կողմը, մտավ Լենինի բանակի մեջ։ Նրա համար չկար ավելի մեծ պատիվ, քան պատկանել այդ բանակին և գործել նրա շարքերում։

Լենինի ղեկավարությամբ Շահումյանն արտասահմանում ծավալեց վիթխարի պրոպագանդիստական-հրատարակչական գործունեություն։ Ստ. Շահումյանի անվան հետ է կապված գիտական կոմունիզմի ծրագրային մեծ փաստաթղթի՝ «Կոմունիստական պարտիայի մանիֆեստ»-ի հայերեն առաջին լրիվ թարգմանությունը, որը լույս տեսավ 1904 թվականին և լայն տարածում գտավ Անդրկովկասում։ Դա խոշորագույն իրադարձություն էր հայ իրականության մեջ։

***

1904 թվականին Ստ. Շահումյանն արտասահմանից վերադառնում է Թբիլիսի, մտնում Կովկասյան Միութենական Կոմիտեի մեջ և անմիջականորեն մասնակցում նրա անլեգալ օրգան՝ «Պրոլետարիատի Կռիվ» թերթի խմբագրմանն ու հրատարակ-

մանը։ Այդ թերթն ստեղծվել էր «Պրոլետարիատ» և «Բրձոլա» թերթերի միացման բազայի վրա և լույս էր տեսնում հայերեն, վրացերեն ու ռուսերեն։ Ստ. Շահումյանի անմիջական ջանքերով լույս տեսան Վ. Ի. Լենինի ու Ի. Վ. Ստալինի մի շարք հոդվածները հայերեն լեզվով։ Ինքը նույնպես հանդես եկավ փայլուն հոդվածներով, որոնք գրված են լենինյան ոգով։

Երբ սկսվում է ռուսական առաջին ռևոլյուցիան, Ստ. Շահումյանը իրեն ամբողջովին նվիրում է քաղաքական-ռևոլյուցիոն աշխատանքին։ Շահումյանն անմիջականորեն մասնակցեց Թբիլիսի բանվորների մարտական ելույթներին, գլխավորեց բանվորների բողոքը հոկտեմբերի 17-ի ցարական մանիֆեստի դեմ, մերկացրեց նրա կեղծ ու խաբուսիկ էությունը և մասսաներին կոչ արեց տապալել ցարական իշխանությունը։ Նույնպիսի եռանդով Շահումյանը գործում էր նաև գյուղացիների մեջ ու բանակում։

Ռևոլյուցիայի տարիներին Ի. Վ. Ստալինի հետ միասին Շահումյանը 1905 թվականին ղեկավարում էր «Կավկազսկի Ռաբոչի Լիստոկ» առաջին բոլշևիկյան լեգալ օրաթերթը Կովկասում, որը Կովկասյան Միութենական Կոմիտեի օրգանն էր։ Շահումյանի և



Սպանդարյանի ղեկավարությամբ 1906—1907 թ. թ. լույս տեսան «Կայծ», «Նոր խոսք» և «Օրեր» բոլշևիկյան թերթերը։

Ստ. Շահումյանը հետևողականորեն անց էր կացնում լենինյան տակտիկական դրույթները ռուսական առաջին ռևոլյուցիայի բընույթի, շարժիչ ուժերի ու նրա զարգացման հեռանկարների մասին։

Շահումյանը ընդգծում է, որ ռուսական ռևոլյուցիան բուրժուա-դեմոկրատական է և, ի տարբերություն արևմտա-եվրոպական ռեվոլյուցիաների, նրա հեգեմոնը պրոլետարիատն է։

Ստ. Շահումյանն անմիջականորեն ղեկավարում էր պարտիական-կազմակերպական աշխատանքների ծավալումը Անդրկովկասի մի շարք վայրերում ու Հայաստանում։ Նրա, Սուրեն Սպանդարյանի, Մելիք Մելիքյանի, Ասքանազ Մռավյանի, Հովհաննես Սարուխանյանի և մյուսների ջանքերով բոլշևիկյան խմբակներ ու կոմիտեներ ստեղծվեցին Երևանում, Ալավերդում, Ջալալ-Օղլիում (Ստեփանավան), Ալեքսանդրապոլում (Լենինական), Կարսում, Նոր-Բայազետում և ուրիշ տեղերում։

1906 թվականին Ստ. Շահումյանը, որպես Երևանի բոլշևիկյան կազմակերպու-

թյան դելեգատ, մասնակցում է ՌՍԴԲՊ 4-րդ «Միավորիչ» համագումարին, մերկացնում մենշևիկներին ու պաշտպանում լենինյան բանաձևերը։

1906 թվականին Շահումյանը Սպանդարյանի հետ միասին գլխավորում է Ալավերդու բանվորների վիթխարի գործադուլը։ 1906 թվականի վերջերին նա ղեկավարում է Բորչալուի պարտկազմակերպության երկու կոնֆերենցիաները։

Որպես Բորչալուի բոլշևիկյան կազմակերպության դելեգատներ՝ Ստ. Շահումյանը և Մ. Ցխակայան 1907 թվականին մասնակցում են ՌՍԴԲՊ 5-րդ համագումարին, որը նշանավորեց բոլշևիկների փայլուն հաղթանակը մենշևիկների դեմ։ Ստ. Շահումյանն իր մարտական ելույթներում մերկացրեց մենշևիկների մանր-բուրժուական էությունը։

Ռուսական առաջին ռևոլյուցիայի տարիներին բոլշևիկները վճռական պայքար են մղում նաև բուրժուական նացիոնալիստների դեմ։ Նացիոնալիզմի դեմ մղվող պայքարի առաջին գծում էր Ստ. Շահումյանը։ Նա ցույց է տալիս, որ նացիոնալիզմը ռևոլյուցիայի ոխերիմ թշնամին է Կովկասում։

Զինված լենինյան դրույթներով՝ Շահումյանը վճռական ու մահացու հարվածներ է



հասցնում նացիոնալիստներին։ Նա մերկացրեց հայ և անդրկովկասյան ժողովուրդների ոխերիմ թշնամի դաշնակցություն պարտիայի սև-հարյուրակային, ռեակցիոն կերպարանքը։

Շահումյանը վճռական պայքար մղեց նաև «սպեցիֆիկների», «հնչակյանների», վրացական և ադրբեջանական նացիոնալիստների, վելիկոռուսական շովինիստների դեմ։

Բոլշևիկների պայքարը նացիոնալիզմի դեմ ընթանում էր կովկասյան ժողովուրդների համերաշխության ու միասնության ամրապնդման նշանաբանի տակ։ Ստ. Շահումյանը հանդես էր գալիս որպես ժողովուրդների բարեկամության մեծագույն պաշտպան ու կերտող։ Նա ցույց է տալիս, որ «Ցարական լծի տակ հեծացող բոլոր ազգությունների պրոլետարների համերաշխությունը— ռևոլյուցիայի հաղթության գլխավոր գրավականն է»։

Ռուսական առաջին ռևոլյուցիայի տարիներին Ստ. Շահումյանը գրեց մի շարք թեորետիկական աշխատություններ, որոնց մեջ նա հանդես է գալիս որպես ստեղծագործական մարքսիզմի ներկայացուցիչ։ Պատասխա-

կան չէ, որ Շահումյանին անվանում էին «թեորիական մարքսիզմի ծանր հրետանի», ինչպես բնութագրել է նրան Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության ականավոր գործիչ Սերգո Օրջոնիկիձեն։

***

1907 թվականին վերադառնալով ՌՍԴԲՊ 5-րդ համագումարից, Ստ. Շահումյանը պարտիայի կամքով աշխատանքի է անցնում Բաքվում։ Նա ընտրվում է Բաքվի բոլշևիկյան Կոմիտեի անդամ և Ի. Վ. Ստալինի հետ միասին անմիջականորեն խմբագրում է «Բակինսկի ռաբոչի», «Բակինսկի պրոլետարի» և «Գուդոկ» բոլշևիկյան թերթերը, որոնց էջերում տպագրվում են նրա բազմաթիվ հոդվածները։

Շահումյանը գլխավորում է Բաքվի բանվորների մասսայական ելույթները, գրում թռուցիկներ, հանդես գալիս զեկուցումներով ու զրույցներով։ Ստոլիպինյան ռեակցիայի ծանր օրերին զուգակցելով անլեգալ ու լեգալ աշխատանքը, Շահումյանն ամենուրեք անց է կացնում լենինյան այն միտքը, որ ռևոլյուցիան կրել է միայն ժամանակավոր պարտություն և պրոլետարիատի խնդիրն է ավելի վճռականորեն պատրաստվել նոր



մարտերի։ Նա մեծագույն հմտությամբ է օգտագործում լեգալ հնարավորությունները, այդ թվում նաև գրականագիտությունն ու պատմագիտությունը՝ ռևոլյուցիոն աշխատանք ծավալելու համար։

Շահումյանը մերկացնում և անողոքաբար հարվածներ է հասցնում մենշևիկ-լիկվիդատորներին, տրոցկիստներին, դաշնակցականներին, էսեռներին, որոնք փաստորեն մի բլոկ կազմած քայքայում էին բանվորների շարքերը և ծառայում բուրժուազիային։

Շահումյանի բազմակողմանի ու բեղմնավոր գործունեությունը ընթանում էր ցարիզմի դաժան հալածանքների ու հետապնդումների պայմաններում։ Բայց նա հիանալի կոնսպիրատոր էր և գործում էր մեծագույն ճշտությամբ։ Սկսած 1902—1903 թվականներից Շահումյանի վրա սահմանվում է խիստ ոստիկանական հսկողություն։ Բայց միայն 1909 թվականի ապրիլի 30-ին ցարական իշխանություններին հաջողվում է ձերբակալել Շահումյանին, սակայն մայիսին նա ազատվում է կալանքից և շարունակում իր եռանդուն գործունեությունը։

Ստ. Շահումյանը ակտիվ մասնակցություն է ունենում Պրագայի կոնֆերենցիայի

*նախապատրաստական աշխատանքներին, բայց 1911 թվականի սեպտեմբերի 30-ին նա ձերբակալվում է որպես կովկասյան բոլշևիկների լիդերներից մեկը և աքսորվում է Աստրախան։ Բանտում նա իմանում է Պրագայի կոնֆերենցիայի արդյունքների մասին և ամբողջությամբ միանում նրա որոշումներին։*

***

*Աննկուն բոլշևիկ Շահումյանը հաղթահարելով բազմաթիվ դժվարություններ, շարունակում է իր եռանդուն ռևոլյուցիոն աշխատանքը նաև աքսորավայրում։ Նա ակտիվորեն մասնակցում է բոլշևիկյան «Պրավդա»-ի խմբագրական աշխատանքներին և անմիջականորեն թղթակցություններ ուղարկում Աստրախանից։*

*Բանվորական շարժման վերելքի տարիներին բացառիկ կարևոր նշանակություն ստացավ ազգային հարցը, որի մարքսիստական թեորիան ու բոլշևիկյան ծրագիրը մշակեցին Վ. Ի. Լենինն ու Ի. Վ. Ստալինը։ Նրանց ղեկավարությամբ Ստ. Շահումյանը դառնում է ազգային հարցի ճանաչված թեորետիկներից մեկը, ազգային հարցի մարքս-լենինյան ուսմունքի հետևողական պաշտպանն ու կիրառողը։*



*Շահումյանը գրեց «Ազգային-կուլտուրական ավտոնոմիայի մասին» հռչակավոր աշխատությունը, որը լույս տեսավ 1914 թվականին։ Այնտեղ նա լենինյան դիրքերից պաշտպանում է ազգերի ինքնորոշման իրավունքի բոլշևիկյան պահանջը և մերկացնում կուլտուր-ազգային ավտոնոմիայի քարոզի կատարյալ սնանկությունը, նրա բուրժուա-նացիոնալիստական, ռեակցիոն էությունը։*

*Շահումյանը ցույց է տալիս, որ նացիոնալիզմի դեմ մղվող պայքարը պետք է լինի սիստեմատիկ ու հետևողական, որովհետև «Նացիոնալիզմը, ինչպես ամեն մի պարտված և մահվան դատապարտված իդեոլոգիա, խիստ խորամանկ է, հարմարվող և դարանակալ։ Ճիշտ այնպես, ինչպես ամբողջ բուրժուական իդեոլոգիան ներկայումս»։ Մարտնչող ինտերնացիոնալիստի այս իմաստուն խոսքերը շնչում են խորը այժմեականությամբ և մոբիլիզացնում սովետական մարդկանց մինչև վերջը հաղթահարելու բուրժուական նացիոնալիզմի ռեցիդիվները։ Շահումյանի պայքարը բուրժուական նացիոնալիզմի դեմ ունի քաղա-*

քական-դաստիարակչական նշանակություն և մինչև այժմ էլ ուսանելի է ու ոգեշնչող։

***

1914 թվականին Շահումյանն աքսորից վերադառնում է Բաքու և անմիջականորեն գլխավորում Անդրկովկասի բոլշևիկների գործունեությունը։ Նույն 1914 թվականի ամռանը ծավալվում է Բաքվի բանվորների հերոսական գործադուլը՝ Ստեփան Շահումյանի ղեկավարությամբ։

Ստեփան Շահումյանը մշտական կապի մեջ էր Մեծ Լենինի հետ և երբ պայթեց պատերազմը, Անդրկովկասի բոլշևիկները լենինյան-ինտերնացիոնալիստական դիրք գրավեցին պատերազմի, խաղաղության և ռևոլյուցիայի հարցերում։

1915 թվականի հոկտեմբերին Բաքվում Ստ. Շահումյանի գլխավորությամբ տեղի ունեցավ Կովկասի բոլշևիկյան կազմակերպությունների կոնֆերենցիան, որի ընդունած բանաձևերը կազմված են պատերազմի վերաբերյալ լենինյան թեզիսների ու պարտիայի մանիֆեստի ոգով։

Կոնֆերենցիան սկսված պատերազմը դատապարտեց որպես անարդարացի, թալանչիական, իմպերիալիստական պատերազմ և



կոչ արեց Կովկասի ժողովուրդներին ակտիվ ռևոլյուցիոն պայքարով այն վերածել քաղաքացիական պատերազմի։

Ռևոլյուցիոն աշխատանքի հետագա ծավալման համար Կովկասի բոլշևիկյան կազմակերպությունների կոնֆերենցիան ընտրեց ղեկավար մարմին՝ ՌՍԴԲՊ(բ)-ի Կովկասյան բյուրո՝ Ստ. Շահումյանի գլխավորությամբ։

1915 թվականին Լենինին գրած կոնսպիրատիվ նամակում տալով Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների գործունեության ընդհանուր պատկերը, Շահումյանը նշում է. «Ընդհանրապես ասած թույլ եմ տալիս կարծելու, որ ես և մեր բոլոր ազգականները [բոլշևիկները] բարձր ենք պահում մեր ընտանեկան [բոլշևիկյան պարտիայի] դրոշակը և որ Դուք կարող եք մեր ռեպուտացիայի համար հանգիստ լինել»։

Ցարական իշխանությունները ուժեղացնում են իրենց հսկողությունն ու հետապնդումները Շահումյանի նկատմամբ, որի հեղինակությունը գնալով ավելի է մեծա-

նում։ Նա ներկայանում է որպես պարտիայի խոշորագույն ղեկավար գործիչ և անմիջականորեն ուղղություն տալիս Անդրկովկասի բոլշևիկներին։ Այդ մասին հարկադրված էին խոստովանել նաև ցարական իշխանությունները։ Ոստիկանական գրագրություններից մեկում ասված է, որ Շահումյանը համարվում է Կովկասի ամենազարգացած և ամենափորձված պարտիական աշխատողներից մեկը, նա համոզված բոլշևիկ է և հայտնի Լենինի կողմնակիցը, որի հետ էլ վարում է գրագրություն։ 1916 թվականի մարտին Շահումյանը ձերբակալվում է և դեկտեմբերին աքսորվում Սարատով։

***

Ստեփան Շահումյանի գործունեության մեջ բացառիկ կարևոր տեղ է գրավում 1917—1918 թ. թ. ժամանակաշրջանը, երբ նա հանդես է գալիս որպես Կովկասի Արտակարգ Կոմիսար և Բաքվի կոմունայի ղեկավար։

Փետրվարյան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի հետևանքով Շահումյանն ազատվում է աքսորից և 1917 թվականին վերադառնում Բաքու։ Վայելելով Բաքվի բանվորների սերն ու վստահությունը, դեռ



ճանապարհին նա ընտրվում է բանվորների և զինվորների Դեպուտատների Բաքվի Սովետի նախագահ։

Ցարիզմի տապալումից հետո Կոմունիստական պարտիան՝ մեծ Լենինի հանճարեղ ցուցումով ընդունեց սոցիալիստական ռևոլյուցիայի դիրքորոշում։ Բաքվի բոլշևիկյան կազմակերպությունը՝ Ստ. Շահումյանի ղեկավարությամբ պայքար է ծավալում լենինյան ցուցումները և պարտիայի Ապրիլյան կոնֆերենցիայի որոշումները կատարելու համար։

1917 թվականին Շահումյանը մասնակցում է Պետրոգրադում Սովետների Համառուսական 1-ին համագումարին և ընտրվում Համառուսական Կենտրոնական Գործադիր Կոմիտեի անդամ։ 1917 թվականին պարտիայի 6-րդ համագումարում Շահումյանը ընտրվում է Կենտրոնական Կոմիտեի անդամ։ Այնուհետև Շահումյանը մասնակցում է պարտիայի Կենտկոմի սեպտեմբերի 15-ի նիստին, ուր քննարկվում են Վ. Ի. Լենինի նամակները զինված ապստամբության մասին։

Վերադառնալով Անդրկովկաս, նա գլխավորում է բոլշևիկների գործունեությունը՝ զինված ապստամբության նախապատ-

րաստման ու կենսագործման համար։ 1917 թվականի հոկտեմբերի 2—7-ը Շահումյանի ղեկավարությամբ Թբիլիսիում տեղի է ունենում Կովկասի բոլշևիկյան կազմակերպությունների 1-ին համագումարը։ Համագումարում ընթացիկ մոմենտի մասին տված իր զեկուցման մեջ նա կոչ է անում՝ չկանգնելով և ոչ մի դժվարության առաջ՝ ռևոլյուցիան հասցնել մինչև իր հաղթական վախճանը ու գրավել քաղաքական իշխանությունը։ Համագումարն ընդունեց Շահումյանի առաջադրած բանաձևը։

Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակը, որով մեր Հայրենիքի և ողջ մարդկության պատմության մեջ սկսվեց նոր դարագլուխ, ոգեշնչեց և հերոսական մղում տվեց Բաքվի բոլշևիկներին։ Նրանց եռանդուն աշխատանքի շնորհիվ 1917 թվականի հոկտեմբերի 31-ին Բաքվի Սովետի ընդլայնված նիստը որոշում ընդունեց իշխանությունը սովետներին անցնելու մասին։ Այսպիսով, Բաքվի պրոլետարիատն ըստ արժանվույն Անդրկովկասում առաջինն է բարձրացնում Սովետների կարմիր դրոշը։ Անդրկովկասում Սովետական իշխանության համար մղվող պայքարն անմի-



ջականորեն ղեկավարելու համար Ժողովրդական Կոմիսարների Սովետը 1917 թվականի դեկտեմբերի 18-ի դեկրետով Ստեփան Շահումյանին նշանակում է Կովկասի Գործերի Արտակարգ կոմիսար։ Շահումյանի մանդատը ստորագրում են Լենինն ու Ստալինը, որը տեղ է հասցնում խիզախ բոլշևիկ Կամոն։

Շահումյանը գլխավորում է Անդրկովկասի ժողովուրդների պայքարը Սովետական կարգեր հաստատելու համար։

Սովետական իշխանության համար մղվող պայքարը դժվարանում էր մենշևիկների, էսեռների, դաշնակների ու մուսավաթականների կատաղի դիմադրությամբ, որոնք դիմում էին բոլոր գարշելի միջոցներին՝ մասսաների ռևոլյուցիոն շարժումները խեղդելու և բոլշևիկներին լիկվիդացնելու համար։ Կոնտրռևոլյուցիոն Անդրկովկասյան Կոմիսարիատը հրաման արձակեց Շահումյանին ձերբակալելու մասին։ 1918 թվականի փետրվարին արգահատելի Ժորդանիայի ու Գեգեչկորիի կարգադրությամբ Թբիլիսիում գնդակոծվեց բանվորների միտինգը և մենշևիկները ցանկացան հաշվեհարդար տեսնել Շահումյանի հետ։

Բայց զուր ջանքեր։ Գնալով աճում է բոլ-

շեիկների ազդեցությունը մասսաների մեջ։ Շահումյանն իր զինակիցների հետ միասին անձամբ շրջագայում էր Անդրկովկասի բանվորական վայրերը ու գյուղերը և աշխատավորներին վճռական պայքարի կոչ անում։

Լենինը և Ստալինը հետևում էին Անդրկովկասյան դեպքերի զարգացմանը և անմիջական ցուցումներ ու խորհուրդներ տալիս այնտեղի կոմունիստներին։ Վ. Ի. Լենինը 1918 թվականի փետրվարի 14-ին տված հեռագրում նշում է.

«Թանկագին ընկեր Շահումյան։

Շատ շնորհակալ եմ նամակի համար։ Մենք հրճվանքի մեջ ենք Ձեր հաստատակամ և վճռական քաղաքականությունից։ Կարողացեք դրան միացնել այն ամենազգույշ դիվանագիտությունը, որը անպայման թելադրվում է այժմյան դժվարագույն դրությամբ,— և մենք կհաղթենք։

... Լավագույն ողջույններ ու ցանկություններ և ողջույն բոլոր բարեկամներին»։

Գոտեպնդված մեծ Լենինի ցուցումներով, 1918 թվականի մարտի վերջին և ապրիլի սկզբին Բաքվի պրոլետարիատը ջախջախում



է մուսավաթական բանդաների կոնտրռևոլյուցիոն խռովությունը։ Քաղաքացիական պատերազմի այդ սուր գոտեմարտում Սովետական իշխանությունը փայլուն հաղթանակ տարավ։

1918 թվականի ապրիլի 25-ին կազմակերպվեց Ժողովրդական Կոմիսարների Սովետ՝ Ստ. Շահումյանի գլխավորությամբ։ Այդ մարտական պոստում նա իրեն դրսևորում է որպես Սովետական պետության խոշոր մասշտաբի ականավոր գործիչ։

Լենինի ու Ստալինի ցուցումներով ու նրանց հավանությամբ Բաքվի Ժողկոմսովետը ձեռնամուխ եղավ մի շարք սոցիալիստական միջոցառումների կենսագործման։ Ազգայնացվեցին նավթարդյունաբերությունը, կասպիական նավատորմը, բանկերը, դեկրետ հրատարակվեց խանական ու բեգական հողերի բռնագրավման մասին, սահմանվեց 8-ժամյա բանվորական օր, մտցվեց դպրոցական ռեֆորմ և այլն։ Բաքվի պրոլետարիատը ծանր պայմաններում ավելացրեց նավթի հանույթը և կարճ ժամանակամիջոցում Աստրախան ուղարկվեց 80 միլիոն փութ նավթ։ Բաքվի Ժողկոմսովետը՝ Շահումյանի գլխավորությամբ վիթխարի աշխատանք ծավալեց Սովետա-

կան իշխանության տարածման համար Ադրբեջանում և ամբողջ Անդրկովկասում։

Այդ բոլորն անասնական թշնամությամբ ընդունեցին Անդրկովկասի կոնտրռևոլյուցիոն ուժերը, որոնք դաշնակցած օտարերկրյա իմպերիալիստների հետ, ձգտում էին ամեն կերպ տապալել Սովետական իշխանությունը Բաքվում։ Գերմանա-թյուրքական ու անգլիական իմպերիալիստները իրենց ստոր վարձկաններ՝ մուսավաթականների, դաշնակների, էսեռների ու մենշևիկների հետ միասին նախապատրաստվեցին հարձակման։ Այդ ծանր օրերին Բաքվի Ժողկոմսովետը՝ Շահումյանի գլխավորությամբ զբաղված էր զինված ուժերի կազմակերպմամբ, Բաքվի պաշտպանության ամրապնդմամբ։ Սովետական Ռուսաստանը անդուլ կերպով օգնում է Բաքվին՝ ուղարկելով զինամթերք, պարեն, զինված ջոկատներ։

Բոլշևիկները՝ Շահումյանի գլխավորությամբ լարեցին բոլոր ուժերը Բաքուն պաշտպանելու համար։ Շահումյանը իր բազմաթիվ ելույթներում մերկացրեց բուրժուական նացիոնալիստներին, որոնք հրավիրում էին գերմանա-թյուրքական ու անգլիական իմպերիալիստներին և գործում նրանց հետ միասին։ Շահումյանը դատա-



պարտելով այդ հանցագործ քաղաքականությունը, ցույց է տալիս, որ Անդրկովկասի ժողովուրդների ազատագրությունը պետք է սպասել ո՛չ թե օտարերկրյա իմպերիալիստներից, այլ Սովետական Ռուսաստանից։ Կովկասի ժողովուրդները ռուս մեծ ժողովրդի օգնությամբ միայն կարող են հասնել սոցիալական ու ազգային ազատության։ 1918 թվականի հուլիսի 2-ին Վ. Ի. Լենինին և Ի. Վ. Ստալինին ուղարկած հեռագրում Ստ. Շահումյանը գրում է. «Կովկասում ընդհանուր դրությունը շարունակ բարդանում է, բայց մենք կայտառ ու հավատով լեցուն ենք զգում մեզ»։

Չնայած Բաքվի կոմունիստների և պրոլետարիատի հերոսական դիմադրության, ուժերի կատարյալ անհավասարության պայմաններում 1918 թվականի հուլիսի վերջին քաղաքը շրջապատվեց թշնամու զորքերով, իսկ հուլիսի 31-ին ներքին կոնտրռևոլյուցիոն և արտաքին ինտերվենցիոն ուժերի հարվածների տակ ընկավ Բաքվի հերոսական կոմունան և ժամանակավորապես այնտեղ պարտվեց Սովետական իշխանությունը։

Անգլիական իմպերիալիստները իրենց ստոր գործակալներ՝ էսեռների, մենշևիկների, դաշնակների ու մուսավաթականների

հետ միասին նյութեցին հրեշավոր ոճրագործություն և 1918 թվականի սեպտեմբերի 20-ին Անդրկասպյան ավազուտներում գազանաբար հոշոտեցին Բաքվի հերոս կոմունարներին։

Չնայած դրան, մեր Հայրենիքի թշնամիներն այնուամենայնիվ չհասան իրենց նպատակին։ Հերոս կոմունարների հիշատակը մեկընդմիշտ հավերժացրին Բաքվի պրոլետարիատը և Անդրկովկասի աշխատավորությունը։ Ռուս մեծ ժողովրդի օգնությամբ Սովետական իշխանության հաղթական երթը տարածվեց Բաքվում և ամբողջ Անդրկովկասում։

Մեծանուն բոլշևիկ Շահումյանը երբեք չի ընկճվել թշնամու առաջ։ Գնդակահարության պահին էլ նա խորը հավատով էր լցված դեպի հաղթանակը։ Շահումյանի և նրա ընկերների վերջին խոսքերն էին. «Մենք մեռնում ենք հանուն կոմունիզմի, կեցցե՛ կոմունիզմը»։ Այդ խոսքերի մեջ մարմնացած է Շահումյանի կյանքի նպատակը, նրա անցած ռևոլյուցիոն պայքարի մրրկալից ուղին, անսահման սերն ու նվիրվածությունը Կոմունիստական պարտիայի մեծ գործին։

Աննկուն ռևոլյուցիոներների արյան գը-



նով, մեր հերոս ժողովրդի համառ պայքարով հաղթանակեց սոցիալիստական ռևոլյուցիան և մեր Հայրենիքը դուրս եկավ մարդկային պրոգրեսի լայն ուղին։ Սովետական ժողովուրդը՝ Կոմունիստական պարտիայի իմաստուն ղեկավարությամբ պատմական կարճ ժամանակամիջոցում կառուցեց սոցիալիզմ և այժմ հաղթականորեն գնում է դեպի կոմունիզմ, որի համար իր կյանքը նվիրեց անվանի բոլշևիկ Ստ. Շահումյանը։

Ստ. Շահումյանի հիասքանչ անունը անջնջելի տառերով է գրված Սովետական Միության Կոմունիստական պարտիայի փառապանծ պատմության մեջ, մեր պանծալի Հայրենիքի հերոսական տարեգրության մեջ։ Անվեհեր գործիչ Շահումյանի կերպարը ոգեշնչող օրինակ է կոմունիզմ կառուցող սովետական մարդկանց համար։

———

# ՉԻՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

## Թվեր և փաստեր

✪ *Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան աշխարհի խոշորագույն երկրներից մեկն է, որտեղ բնակչության թիվը կազմում է 475 միլիոն։ Չինաստանում ապրում են ավելի քան 60 ազգեր և ազգային խմբեր՝ ույգուրներ, ղազախներ, կալմիկներ, դունգաններ, տիբեթցիներ, մոնղոլներ, կորեացիներ և այլն, այդ ժողովուրդների թիվը հասնում է 40 միլիոնի։ Բնակչության մոտ 80 տոկոսը զբաղվում է գյուղատնտեսությամբ։ Տերիտորիան հասնում է 9 միլիոն 600 հազար քառակուսի կիլոմետրի։ Վարչական տեսակետից Չինաստանը բաժանվում է 6 երկրամասերի, վերջիններս կազմված են պրովինցիաներից, որոնք բաժանվում են գավառների, շրջանների, սյանների (սյանները միավորում են մի շարք գյուղեր)։*

*Չինաստանն ունի 2 ավտոնոմ ռեսպուբ-*



*լիկա՝ Ներքին Մոնղոլական և Տիբեթական, ինչպես նաև 130 ազգային ավտոնոմ շրջան։*

✪ *Ազատասեր չինական ժողովուրդը իր երկրից դուրս վռնդելով օտարերկրյա զավթիչներին և նրանց կամակատար դավաճան գոմինդանականներին, փիթխարի հաջողություններ է ձեռք բերել ժողովրդական տնտեսության և կուլտուրայի զարգացման գործում։*

✪ *Այժմ երկրի ամբողջ արդյունաբերական ձեռնարկությունների 60 տոկոսից և ծանր արդյունաբերական ձեռնարկությունների 80 տոկոսից ավելին համաժողովրդական ունեցվածք է։ Պետության ձեռքին է գտնըվում երկրի թեթև արդյունաբերության ավելի քան 50 տոկոսը, տրանսպորտի 60 տոկոսը։ Չինական պետական բանկերը տնօրինում են երկրում գտնվող դրամական միջոցների 90 տոկոսը։*

✪ *Երկրում մեծ չափերով ավելանում է արդյունաբերության արտադրանքի թողարկումը։ 1952 թվականի սեպտեմբեր ամսվա տվյալներով արդյունաբերական արտադրանքի թողարկումը 26 տոկոսով գերազանցել է նախապատերազմյան մակարդակը։ Պողպատի ձուլումը նախապատե-*

րազմյանի նկատմամբ կազմում է 170 տոկոս, ցեմենտինը՝ մոտ 153 տոկոս, բամբակի գործվածքինը՝ 165 տոկոս, էլեկտրաէներգիայինը՝ 114 տոկոս, թղթինը՝ 212 տոկոս, նավթինը՝ 136 տոկոս, չուգունինը՝ 105 տոկոս, ավտոռետինինը՝ 541 տոկոս, ալյուրինը՝ 106 տոկոս և այլն։

✪ 1950—1952 թվականների ընթացքում արդյունաբերական արտադրանքը կրկնապատկվել է, իսկ ծանր արդյունաբերության արտադրանքի թողարկումն ավելացել է 10-ից մինչև 11 անգամ։ Տարեցտարի ավելանում է արտադրության միջոցների արտադրությունը։ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան խոշոր հաջողությունների է հասել մեքենաշինության ասպարեզում։ Առաջ Չինաստանը մեքենաներ էր գնում արտասահմանից, իսկ այժմ այն ինքն է արտադրում։ Հյուսիս-Արևելյան Չինաստանում արտադրվում են խառատային, ֆրեզերային և այլ տեսակի հաստոցներ, մամլակներ, զանազան կոմպրեսորներ, էլեկտրամոտորներ, դիզելներ, լոկոմոբիլներ և այլն։

✪ Արդեն երկրորդ տարին է, ինչ Չինաստանում սկսվել է գործվածքային մեքենաների արտադրությունը, մեքենաներ, որ նա առաջ ստանում էր արտասահմանից։ Այժմ



երկրում կա վերակառուցված 6 և նոր տեքստիլ մեքենաշինական 1 գործարան։ Այդ գործարանները բավարարում են թողարկվող նոր տեքստիլ ձեռնարկությունների մեքենայական պահանջը։ Այսպես, օրինակ, Չժենչժոում (Խենան), Սյանյանում (Շենսի), Հանդանեում (Խեբեյ), Ուխանում (Խուբեյ) վերջերս կառուցված մանվածքագործվածքային գործարանները լրիվ կերպով սարքավորված են հայրենական մեքենաներով։ Այդ նոր գործարանները կառուցված են երկրի բամբակագործական շրջաններում։ Ժողովրդական կառավարությունը ձգտում է ռացիոնալ կերպով տեղադրել երկրի արտադրողական ուժերը, այն ավելի մոտեցնելով հումքի աղբյուրներին և սպառողական շրջաններին։

✪ Կապիտալ շինարարությունների ծավալը 1952 թվականին, 1950 թվականի համեմատությամբ ավելացել է ավելի քան 3 անգամ։ Անցյալ տարվա վերջին, 1949 թվականի համեմատությամբ, միայն երկրի Հյուսիս Արևելքի արդյունաբերության արտադրանքի թողարկումը ավելացել է 3,3 անգամ։

✪ 1953 թվականին կապիտալ շինարարությունը, 1952 թվականի համեմատու-

թյամբ, ավելացել է 41 տոկոսով։ Ծանր արդյունաբերության և մեքենաշինության կապիտալ կառուցումները աճել են 47 տոկոսով, իսկ վառելիքի արդյունաբերությունը՝ 86 տոկոսով։ Կապիտալ շինարարությունը ծավալվում է երկրի բոլոր շրջաններում, հատկապես Հյուսիս-Արևելյան Չինաստանում։ Այստեղ սկսված է արդյունաբերական և բնակելի շենքերի մեծ շինարարություն, 3—3,5 միլիոն քառակուսի մետր ծավալով։ Խոշոր շինարարություն է կատարվում Հյուսիս-Արևմտյան Չինաստանում, որտեղ կապիտալ շինարարության ծավալը 1952 թվականի համեմատությամբ, այս տարի կավելանա վեց անգամ։ Այդ շրջանում կառուցվում է արդյունաբերական 170 խոշոր օբյեկտ։

Հարավ-Արևմտյան Չինաստանում ծավալվում է արդյունաբերական 98 օբյեկտների շինարարությունը, որոնց մեծ մասը շարք է մտնելու 1953 թվականի վերջին։

✪ 1953 թվականին մեծ ուշադրություն է դարձվում ծանր արդյունաբերության, սև մետալուրգիայի, գունավոր մետալուրգիայի և քիմիական արդյունաբերության զարգացման վրա։ Վերակառուցվում և ընդլայնվում են 13 խոշոր գործարաններ, կառուցվում



է 8 նոր գործարան, այդ թվում՝ խոշոր մետալուրգիական գործարան Կենտրոնական Չինաստանում։ 1953 թվականին կավարտվի մեքենաշինական 15 գործարանների վերակառուցումն ու ընդլայնումը և կըկառուցվի 9 նոր գործարան՝ ծանր մեքենաշինական, էլեկտրասարքավորումների, ավտոմեքենաների, նավաշինարարական և այլ ձեռնարկություններ։

✪ Այս տարի կառուցվում և վերակառուցվում է 9 ջերմա-էլեկտրակայան և ընդլայնվում է 3 հիդրոէլեկտրակայան ու 12 ջերմային էլեկտրակայան։ Ընդհանուր ներդրումը էլեկտրակայանների կառուցման համար, 1952 թվականի համեմատությամբ ավելացվել է 5 անգամ։

✪ Սովետական Միության օգնությամբ Չինաստանում կառուցվում է 91 գործարան, որից այս տարի՝ 50 գործարան։ Ուժեղ թափով ծավալված են երկրաբանական-հետախուզական աշխատանքները։ Սև և գունավոր մետաղների և քարածխի հետախուզությունը ավելանալու է 23 անգամ, իսկ նավթինը՝ 10 անգամ։ Երկրում աշխատում են հետախուզական տասնյակ խմբեր, որոնք հագեցված են ժամանակակից տեխնիկայով։

✪ Չինական ժողովուրդը խոշոր հաջողությունների է հասել տրանսպորտի զարգացման բնագավառում։ Ինչպես հայտնի է ժողովրդական Չինաստանը ժառանգել էր միայն քայքայված երկաթուղիներ ու խճուղիներ, որոնցով հնարավոր չէր երթևեկել։ 1947 թվականին գործում էր միայն 6 հազար 884 կիլոմետր երկաթուղային գիծ, այդ թիվը 1950—1951 թվականներին հասավ 23 հազար 785 կիլոմետրի։ 32 հազար 438 կիլոմետր տարածության վրա կատարվում է խճուղային ճանապարհների վերանորոգում։ Կառուցված է 1100 կիլոմետր նոր խճուղի, որը պետք է հասնի մինչև 112 հազար կիլոմետրի։

Երեք տարի առաջ լրիվ չափով ավարտվեց երկաթուղային գծերի վերականգնումը, որի ընթացքում ներդրված են երկաթգծերի շահագործման նոր մեթոդներ։ 1952 թվականին Չինաստանի երկաթուղիները տեղափոխել են 131 միլիոն տոննա բեռ, որը 61 տոկոսով ավելի է նախապատերազմյան շրջանի համեմատությամբ։ Նախատեսված ժամկետից 2 տարի շուտ շահագործման հանձնվեց՝ Չունցին-Չենդու և Տյանշույ-Լանչժոու նորակառույց երկաթուղային գիծը (865 կիլոմետր երկարությամբ)։



✪ Չինաստանի Ժողովրդական Ռեսպուբլիկայում իրականացվել և իրականացվում են մի շարք ռեֆորմներ, այդ թվում հողային ռեֆորմը։ Մինչև հողային ռեֆորմի անցկացումը գյուղում շահագործող դասակարգը, որը կազմում էր բնակչության 10 տոկոսը, իր տրամադրության տակ ուներ հողերի 70—80 տոկոսը։ Հողային ռեֆորմի միջոցով 47 միլիոն հեկտար հող կալվածատերերից խլվեց և բաժանվեց գյուղացիներին։

✪ 1940 թվականի համեմատությամբ 1950 թվականին հացահատիկի բերքատվությունը բարձրացել է 117 տոկոսով, 1951 թվականին՝ 128 տոկոսով, 1952 թվականին՝ 140 տոկոսով։ Բամբակի բերքատվությունը 1950 թվականին հասել է 159 տոկոսի, 1951 թվականին՝ 252 տոկոսի, 1952 թվականին՝ 300 տոկոսի, թեյինը՝ 1949 թվականի համեմատությամբ 1953 թվականին բարձրացել է 130 տոկոսով։ Տարեկան ստացվում է 450—500 միլիոն ցենտներ բրինձ, որը կազմում է համաշխարհային բրնձի արտադրության 1/3-ից ավելին։ Մշակվում է մեծ քանակությամբ ծխախոտ, կորեկ, ցորեն և այլ կուլտուրաներ։ Մետաքսի հումքի արտադրությամբ Չինաստանը առաջին տեղն է բռնում

աշխարհում։ 1940 թվականի համեմատությամբ 1952 թվականին խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը ավելացել է 26 տոկոսով, մանր եղջերավորինը՝ 42 տոկոսով։

Լայն ծավալ է ստացել կոլեկտիվ աշխատանքի կազմակերպման սիստեմը։ 1952 թվականի հոկտեմբերին գյուղական տնտեսությունների 40 տոկոսից ավելին ընդգրկված էին տարբեր տիպի փոխօգնության խմբակներում։ Կազմակերպված է 4.000-ից ավելի արտադրական կոոպերատիվներ և մի քանի տասնյակ կոլեկտիվ տնտեսություններ։ Ստեղծված է պետական 62 տնտեսություն, որոնք հագեցված են սովետական տրակտորներով ու գյուղատնտեսական մեքենաներով և մշակում են 130 հազար հեկտարից ավելի հող։

Ագրարային ռեֆորմի հետևանքով այժմ յուրաքանչյուր տարի ավելի քան 30 միլիոն տոննա հաց է մնում գյուղացիներին, որը առաջ հափշտակում էին կալվածատերերը որպես հողի «վարձ»։

✪ Չինաստանի ժողովրդական կառավարությունը մեծ աշխատանք է կատարում հեղեղման դեմ։ Կառուցված ջրամբարների, պատնեշների և ջրատար առուների շնորհիվ



1949 թվականին եղած 8 միլիոն հեկտար ողողվող տարածությունից 1952 թվականին մնում էր 1,4 միլիոն հեկտարից պակաս։ Միաժամանակ 1 միլիոն 200 հազար հեկտարով ավելացել են ջրովի տարածությունները։ Այժմ մեծ աշխատանք է կատարվում Խուանխե, Յանցզըյան և մյուս գետերի սանձահարման ուղղությամբ։

Արդյունաբերության, գյուղատնտեսության և տրանսպորտի վերականգնման ու զարգացման շնորհիվ լավագույն պայմաններ ստեղծվեցին առևտրի լայն ծավալման ու զարգացման համար։ 1952 թվականին, 1951 թվականի համեմատությամբ, ապրանքաշրջանառությունը ավելացավ երկու և կես անգամ։ Միայն պետական առևտրի գծով 41,4 տոկոսով ավելացել է բամբակյա գործվածքեղենի, 47,5 տոկոսով թղթի, 51,1 տոկոսով շաքարի, 103,4 տոկոսով յուղի և շատ ուրիշ ապրանքների վաճառքը։

✪ Առևտուրը մեծ չափերով աճել է հատկապես գյուղում։ Հյուսիս-Արևելյան Չինաստանում արդյունաբերական ապրանքների նկատմամբ գյուղացիների գնողունակությունը վերջին 3 տարվա ընթացքում ավելացել է 10 անգամ։

Մեծ չափերով աճել է արտաքին առևտու-

րը, որը դեռ 1951 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, կրկնապատկվեց իր ծավալով: Երկար տարիներից հետո առաջին անգամ Չինաստանը չունի պասիվ հաշվեմնացորդ (սալդո):

Չինաստանում արտաքին առևտուրը առաջին հերթին աճում է Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների հետ առևտրի ծավալման հաշվին, որը 1952 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, աճել է 72 տոկոսով:

✪ Արագ կերպով զարգանում է ժողովրդական Չինաստանի կուլտուրան: Երկրում գրեթե վերացված է անգրագիտությունը, իսկ մինչև երկրի ազատագրումը բնակչության 80-ից մինչև 90 տոկոսը անգրագետ էր: Այժմ երկրում կան 218 բարձրագույն ուսումնական հաստատություն, որտեղ սովորում են 220 հազար ուսանող: Բարձրագույն ուսումնական հաստատություններում դասախոսների թիվը հասնում է 26 հազար 500 հոգու:

Չինաստանում կա 5.239 միջնակարգ դպրոց, 3 միլիոն 90 հազար աշակերտներով և 300 հազարից ավել տարրական դպրոց, որտեղ սովորում են 53 միլիոնից ավելի աշակերտ: Վերջին երեք տարիներում Չի-



նաստանում նկարահանվել է 213 զանազան կինոֆիլմ: Երկրում գործում են 745 կինոթատրոն և 2.040 շրջիկ կինոխումբ, 154 պետական դրամատիկ խումբ, 2.403 կուլտուրայի տուն, 4.474 կուլտուրայի կայան: Ներկայումս երկրում հրատարակվում են 358 զանազան ժուռնալներ: 1952 թվականի հրատարակված գրքերի տիրաժը հասնում է 264 միլիոն 71 հազար օրինակի: Հրատարակվել է 369 զանազան դասագրքեր 369 միլիոն 921 հազար օրինակ տիրաժով:

✪ Ստեղծվել և ընդլայնվում են ռեսպուբլիկայի ռադիոկայանները և հաղորդման ցանցը: Ներկայումս Չինաստանի Ժողովրդական Ռեսպուբլիկայում կա 70 ռադիոկայան, 4.628 ռադիոհաղորդման հանգույցով, 6.221 ռադիոընդունման կայան (կոլեկտիվ կերպով լսելու համար), կառուցվել է ռադիոապարատուրային արտադրության 5 նոր գործարան:

Չինաստանի ժողովրդական կառավարությունը և Կոմունիստական պարտիան մեծ հաջողություն են ձեռք բերել բանվոր դասակարգի և երկրի բոլոր աշխատավորների նյութական դրությունը բարելավելու գործում: Եթե անցյալում Չինաստանի բոլոր

արդյունաբերական բանվորների մոտ 70 տոկոսը զբաղված էր ամբողջ շաբաթը, օրական 12—14 ժամ, ապա այժմ աշխատանքային նոր օրենսդրության հիման վրա, երկրում սահմանված է ութժամյա բանվորական օր և շաբաթը մեկ հանգստի օր։ 1951 թվականին Չինաստանի պատմության մեջ առաջին անգամ մտցվեց օրենք սոցիալական ապահովագրության մասին։ Զգալիորեն ավելացել է բանվորների ռեալ աշխատավարձը, որը 1949 թվականի համեմատությամբ, 1952 թվականին բարձրացել է 60—120 տոկոսով։

✪ Այս տարվա սեպտեմբերի 14-ից Չինաստանում կատարվել է տեղական արտադրության 991 տեսակի ապրանքների, այդ թվում հագուստեղենի, կոշկեղենի և այլ ապրանքների մանրածախ գների իջեցում։ Գները իջեցվել են մինչև 10 տոկոսով։

✪ Չինական քաղաքներում ծավալված է բնակարանային շինարարություն։ Վերջին երեք տարիներում միայն Հյուսիսային Չինաստանում կառուցվել է ավելի քան 2,6 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն։ Շանհայում արդեն կառուցվել է բանվորական ավան՝ 1.200 ընտանիքի համար։

---

## ԻՆՉ ԿԱՐԴԱԼ ՍՏԵՓԱՆ ՇԱՀՈՒՄՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 75 ԱՄՅԱԿԻ ԿԱՊԱԿՑՈՒԹՅԱՄԲ

1. Վ. Ի. Լենին— *Երկեր, հատ. 6, էջ 411, հատ. 19, էջ 623—627, հատ. 27, էջ 669, հատ. 35 էջ, 104, 140—141, 359, 369, 374, 377, 380։*

2. Ի. Վ. Ստալին— *Երկեր, հատ. 4, էջ 282—286։*

3. Ստ. Շահումյան— *«Ընտիր երկեր» Հայպետհրատ, 1948 թ.։*

4. Ս. Սպանդարյան— *«Հոդվածներ, նամակներ, փաստաթղթեր»։*

5. Ա. Միկոյան— *«Բաքվի 26 Կոմիսարների հիշատակին», «Պրավդա» 29/9—1928 թիվ կամ «Խորհրդային Հայաստան», նույն հոդվածը հայերեն։*

6. Գ. Կ. Օրջոնիկիձե— *«Ընտիր հոդվածներ և ճառեր», էջ 98—102, Հայպետհրատ, 1950 թ.։*

7. Հ. Հակոբյան— *«Ստեփան Շահումյանի մահվան 7-րդ տարեդարձին», Երկեր, էջ 421—430, Հայպետհրատ, 1951 թ.։*

---

Խմբագիր՝ Ս. ՆՇԱՆՅԱՆ

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

Отдел Пропаганды и агитации ЦК КП
Армении

№ 18 1953 г.

БЛОКНОТ АГИТАТОРА

*ՎՖ 04415* *Պատվեր № 894* *Տիրաժ 9050*

*Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան,*
*Կնունյանցի № 8, 1953 թ.*